ԳՈՐԾՆԱԿԱՆ

# ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ

ՀԱՆԴԵՐՁ ՇԱՐԱԴՐՈՒԹԵԱՄԲՔ, ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՎՔ
ԵՒ ԽՕՍԱԿՑՈՒԹԵԱՄԲՔ

ԸՍՏ

ԷՄԻԼ ՕԹԹՈՅԻ

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱՑ

Հ. ՊՕՂՈՍ ՋԱՔԱՐԵԱՆ
Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ

ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ



Ի ՎԻԵՆՆԱ
Ի ՎԱՆՍ ՊԱՇՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ
1891.

ԳՈՐԾՆԱԿԱՆ

# ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ

ԳՈՐԾՆԱԿԱՆ

# ՔԵՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ

ՀԱՆԴԵՐՁ ՇԱՐԱԴՐՈՒԹԵԱՄԲՔ, ԸՆԹԵՐՑՈՒԱԾՈՎՔ

ԵՒ ԽՕՍԱԿՑՈՒԹԵԱՄԲՔ

ըստ


**ԷՄԻԼ ՕԹԹՈՅԻ**

ԱՇԽԱՏԱՍԻՐԵԱՑ

Հ. ՊՕՂՈՍ ՋԱՔԱՐԵԱՆ

Ի ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ


---

**ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ**

*ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆ*




Ի ՎԻԵՆՆԱ

Ի ՎԱՆՍ ՊԱՇՏՊԱՆ Ս. ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻ

1891.

# ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԵՐԿՐՈՐԴ ԴԱՍ

Քերականութեան Առաջին մասին մէջ համաձայնութեան քանի մը կարեւոր կանոնը աստ անդ առանձնուեցան. Հիմայ հոս կ'ամփոփենք գերմաներէն լեզուին ս ե պ հ ա կ ա ն համաձայնական կանոնները, ի բաց թողլով համաձայնութեան այն ընդհանուր կանոնները՝ որոնք ամէն լեզուի համար նոյն են:

## ՅՕԴԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆՔ

Գերմաներէնի մէջ յօդի գործածութեան նկատմամբ բաց ի ընդհանուր կանոններէն՝ (որ ամէն լեզուի համար նոյն են,) պէտք է հետեւեալ մասնական կանոնաց եւս մտադիր ըլլալ։

### Ա. ՈՐՈՇԵԱԼ ՅՕԴ ԿԸ ԳՈՐԾԱԾՈՒԻ

1. Երբեմն յատուկ անուններէն յառաջ (տես Ա. Մասն, ԺԳ. Դաս)։

2. Ամսոց, տարւոյն չորս եղանակաց, օրերու եւ փողոցներու անուններէն յառաջ.

Der Dezember war sehr kalt Դեկտեմբեր (ամիսը) շատ ցուրտ էր.
Im April Ապրիլի մէջ, Ապրիլ ամսուան մէջ.
Der Sonntag ist der Ruhetag Կիրակին հանգստեան օր է.
Ich wohne in der Königsstraße Nr. (Nummer) 20.
Ես Արքունի փողոցը Թ. 20ին կը բնակիմ։

3. Իշխաններու անուանց վրայ աւելցուած թուական կամ վերադիր ածականներէն յառաջ.

Napoleon der Dritte Նաբոլէոն Երրորդ.
Karl der Große Կարոլոս Մեծն։

4. Herr եւ Frau (Տէր եւ Տիկին) բառերէն յառաջ.

Der Herr Professor Տէր ուսուցիչը.
Die Frau Gräfin Տիկին կոմսուհին։

5. Ernennen անուանել. machen ընել. erwählen ընտրել բայերէն վերջը zu կը գործածուի. Եզակին մէջ յօդը նախադրութեան հետ կը միանայ = zum. Օր.

Der Oberst A. wurde zum General ernannt.
Ա. գնդապետը զօրապետ անուանեցաւ.
Der König hat ihn zum Hauptmann gemacht.
Թագաւորը զինքն հարիւրապետ ըրաւ (անուանեց)։

1*

6. Հետեւեալ ոճերու մէջ.

Unter der Bedingung պայմանաւ.
Unter dem Vorwand պատրուակաւ, պատճառանօք.
Nach der Natur zeichnen բնութեան վրայէն գծագրել.
In den Wagen steigen կառք մտնել.
Auf die Kniee fallen ի ծունր իջանել.
Den Mut verlieren վհատիլ, լքանիլ.
Der Meinung sein (այս կամ այն) կարծիքն ունենալ, (այսպէս կամ այնպէս) համարիլ.
Von der Politik, Musik եւն. sprechen քաղաքականութեան, երաժշտութեան եւն. վրայ խօսիլ.
Sich an den Tisch (zur Tafel) setzen սեղանի նստիլ:

## Բ. ՈՐՈՇԵԱԼ ՅՕԴ ՉԻ ԴՐՈՒԻՐ

1. Երկիրներու, քաղաքաց եւ կղզեաց անուններէն յառաջ (Տես Ա. Մասն, ԺԴ. Դաս). բացառութիւնք են՝ die Schweiz Հելուետիա եւ die Türkei Տաճկաստան:

2. Երկրիս չորս կողմերը ցուցընող անուններէն յառաջ՝ եթէ gegen նախադրութեան խնդիր եղած են: Օր.

gegen Norden դէպ ի հիւսիս. — gegen Westen դէպ ի արեւմուտք:

3. Պատուանուն կամ արժանաւորութիւն մը ցուցընող բառերէն յառաջ, եթէ իրենցմէ վերջը յատուկ անուն ալ դրուի. բայց կրնայ յօդ ալ դրուիլ: Օր.

(Der) Doktor Müller Միւլլեր ուսուցչապետը.
(Der) König Wilhelm Գուլիելմոս թագաւորը.
(Der) Kaiser Napoleon Նաբոլէոն կայսրը:

Ծնթ. Բայց լաւագոյն է ըսել՝ der König W., der Kaiser N. եւն:

4. Յատկացեալը յօդ չ'առնուր եթէ յատկացուցիչն իրմէ յառաջ դրուած է: Օր.

Des Königs Wille թագաւորին կամքը.
Der Tugend Lohn առաքինութեան վարձքը.
Des alten Vaters einzige Freude ծերունի հօր միակ ուրախութիւնը.
Des Gärtners Haus պարտիզպանին տունը:

5. dessen եւ deren յարաբերականներէն ետքը. Օր.

Der General, dessen Name so gefürchtet war.
Զօրապետն՝ որուն անունն այնպէս ահաւոր եղած էր.
Die Dame, deren Tochter Sie kennen.

6. Մասնական կամ անորոշ բացատրութեանց մէջ (տես Ա. Մասն, ԺԱ. Դաս).

Ich esse Brot հաց կ'ուտեմ.
Papier, Federn und Bleistifte թուղթ, գրիչ եւ մատիտ:

7. Յօդը շատ անգամ թող կը տրուի առածաւոր խօսքերու մէջ՝ վերացեալ բառերէն յառաջ: Օր.

Irrtum ist menschlich *սխալիլ՝ ամէն մարդու է.*
Armut ist keine Schande *աղքատութիւնն ամօթ չէ.*
(Die) Beschäftigung ist das beste Mittel gegen Langeweile.

8. *Եթէ շատ մը յոքնակի կամ նոյնասեռ եզակի գոյականներ ետեւէ ետեւ դրուած են, հարկ չկայ յօդն ամէնուն վրայ ալ կրկնելու.* Օր.

Jedermann kennt den Geiz, Hochmut und Argwohn dieses Mannes.
*Աս մարդուն ագահութիւնը, հպարտութիւնն ու կասկածոտութիւնը ամէն մարդ կը ճանչնայ.*
Die Wiesen, Hügel und Felder.
*Մարգեր, բլուրներ եւ անտառներ.*
Die Männer und Frauen *այրք եւ կանայք:*

9. *Նմանապէս առանց յօդի կը գործածուին գրքի գլուխներ կամ անուններ.* Օր.

Vorrede *յառաջաբան.* Einleitung *ներածութիւն.*
Allgemeine Geschichte *ընդհանուր պատմութիւն:*

Ծնթ. Gott *բառն եթէ ճշմարիտ Աստուած նշանակէ առանց յօդի կը գործածուի. իսկ եթէ սուտ աստուածներ (չաստուած) նշանակէ յօդով կը բանի.* Օր.

Gott sagte *Աստուած ըսաւ.*
Der Gott Jupiter *Արամազդ չաստուածը:*

10. *Հետեւեալ բացատրութեանց մէջ երբեք յօդ չի դրուիր.* Օր.

Nach französischer Mode *ըստ գաղղիական նորաձեւութեան.*
Ich lerne Französisch *գաղղիերէն կը սորվիմ.*
Gegen Abend *ընդ երեկս, իրիկուան դէմ.*
Vergangene (letzte) Woche *անցեալ շաբաթ.*
Voriges Jahr *անցեալ տարի.*
Nächstes Jahr *գալ տարի.*
Geduld haben *համբերել.*
Frieden schließen *խաղաղութիւն ընել, հաշտուիլ.*
Klavier spielen *դաշնամուր զարնել. եւն:*

### Դ. ԱՆՈՐՈՇ ՅՕԴ ԿԸ ԴՐՈՒԻ

1. *Նախընթաց գոյականի մը կամ յատուկ անուան մը ինչ ըլլալը մեկնող բացայայտիչէն յառաջ. միայն թէ բացայայտեալը ծանօթ անուն չըլլայ:* Օր.

Nürnberg, eine[1] Stadt in Baiern.
*Պաւիերայի Նիւռնպերկ քաղաքը.*
Der Geizige, ein Lustspiel von Moliere.
*Մոլիէռի Ագահ կատակերգութիւնը:*

---

[1] *Պէտք է մտադիր ըլլալ, որ բացայայտիչն ու բացայայտեալը նոյն հոլով կը դրուին.* Օր. Er lebt in Nürnberg, einer Stadt (տր.) Deutschlands *անիկա Գերմանիայի Նիւռնպերկ քաղաքը կը բնակի:*

Բայց պէտք է ըսել առանց յօդի՝

Gustav Adolf, König von Schweden (եւ ոչ՝ ein König եւն.)։

2. Sein, werden, sich ausgeben für... բայերէն վերջը, եթէ ստորոգելին վիճակ մը կամ ազգի անուն ցուցընող գոյական է. Օր.

Mein Vater ist (ein) Arzt Հայրս բժիշկ է.
Dieser junge Mann ist ein Franzose այս երիտասարդը Գաղղիացի է.
Er gibt sich für einen Franzosen aus.
Անիկա Գաղղիացի կը ձեւանայ։

3. Հետեւեալ բացատրութեանց մէջ՝

Ein Mittel finden միջոց գտնել.
Ein Zeichen geben նշան տալ.
Ein Geschenk geben պարգեւ տալ.
Ein Ende machen վերջ տալ, վերջացընել.
Eine Schlacht liefern ճակատ տալ.
Einen Dienst leisten ծառայութիւն մատուցանել եւն։

## Հրահանգ. 128.

1. Der Juni war sehr warm. Mein Oheim wohnt in der Friedrichsstraße. Heinrich der Vierte war ein vortrefflicher König. David wurde zum König von Israel gesalbt (օծուեցաւ). Die Versammlung hat mich zum Präsidenten erwählt. Der Herr Graf ist abgereist. Die Fürsten sind Menschen und können nicht immer helfen. Die Frau Gräfin ist auf den Ball gefahren. Ich habe jetzt nicht Zeil, dieses Buch zu lesen; auch habe ich ein wenig Kopfweh. Ende gut, alles gut. (Die) Trägheit ist eine böse Eigenschaft. Gewalt geht (աւելի կ'արժէ) vor Recht. Greise, Männer, Frauen Kinder, alle wollten ihn sehen. Die Löwen, Tiger, Bären sind wilde und grausame Tiere. Die Tugend, Höflichkeit und Sanftmut machen die Menschen liebenswürdig. Die jungen und alten Leute sind dieser Krankheit unterworfen (ենթակայ). Der junge Mensch sagte: Ich will ein Offizier werden. Wer ein guter Christ ist, wird niemals ein schlechter Bürger werden. Napoleon machte sich zum Beschützer des Rheinbundes (Ռենոսի դաշնակցութիւն). Diese Landschaft (գիւղօրէք) ist nach Natur gezeichnet.

2. Ein Mann, dessen guter Ruf (համբաւ) verloren ist, ist sehr unglücklich. Asien liegt gegen Osten. Hier ist das Buch, dessen Verfasser Sie so sehr verehren. In Italien ist der Januar nicht kalt; dagegen ist der Juli sehr heiß. Ich habe schon Englisch gelernt, ich werde auch Italienisch lernen. Wir werden gegen sechs Uhr einen Spaziergang machen. Der General machte der Plünderung ein Ende. Ist dieser junge Mann ein Amerikaner? Nein,

er ist ein Irländer, aber seine Mutter ist eine Amerikanerin. Christoph Kolumbus, ein Genueser, hat Amerika entdeckt. Mein Kutscher ist ein Italiener; mein Bedienter ist ein Schweizer. Mein älterer Bruder ist ein Advokat, mein jüngerer ist ein Arzt. Äsop war aus Phrygien (Փռիւգիա), einer Provinz Kleinasiens (Փոքր Ասիա); er war der Sklave des Xanthus (Քսանթոս), eines ziemlich berühmten Weltweisen (փիլիսոփայ). Wir lesen Athalie (Գոթողիա), ein Trauerspiel (ողբերգութիւն) von Racine. Der Menschen Leben ist kurz.

## Տարադրութիւն. 129.

1. Օգոստոսին իշխանութեան ժամանակ (unter)։ Յուլիս շատ տաք էր։ Մարտը տարւոյն երրորդ ամիսն է։ Ես երկուշաբթի օրը (am Montag) հասայ։ Հիմայ ո՞ւր կը բնակիք։ Թատեր փողոց (Theaterstraße) Թիւ 25ին կը բնակիմ։ Փրեդերիկոս Բ. Բրուսիայի թագաւոր էր։ Պետրոս առաջին Մեծ անուանեցաւ։ Կարոլոս ԺԲ. Շուետի թագաւոր էր։ Տէր Պ. կուսակալ (Präfekt) եւ Տէր Լ. տէրութեան խորհրդական (Staatsrat) անուանեցան։ Փարաւոն (Pharao) զՅովսէփ (Joseph) Եգիպտոսի կառավար (Statthalter) անուանեց, թէպէտ եւ անիկա Եբրայեցի (Hebräer) էր։

2. Տիկին կոմսուհին թատր գնաց։ Գաղղիան աւելի պտղաբեր է քան Շուետը։ Ամերիկա Եւրոպային արեւմտեան կողմը[1] կ'իյնայ (liegt)։ Տոքթոր Պէրկը կը ճանչնա՞ք։ Պապիս պարտիզին մէջ հին կաղնի[2] մը կար (stand), որուն արմատը[3] բոլորովին սնամէջ[4] էր։ Հոս է [ան] պզտիկ տղան, որուն հայրը սպանուեցաւ։ (Ես) չեմ գիտեր (ճանչնար) այս տնկին անունը, որուն գեղեցկութիւնն այնչափ (so sehr) հիանալի է (կրճ. կը զարմացուի)։ Հելուետիայի մէջ գետեր, լճեր, գեղեցիկ գեղեր, գեղեցիկ քաղաքներ եւ բարձր լեռներ կան։

[1] westlich von E. [2] Eiche, էգ. [3] Stamm. [4] ganz hohl.

## 130.

Ձմեռը յաճախ ցրտէն (vor...) կը դողանք։ Դաշնամու՞ր[1] թէ սրինգ[2] կը զարնէք[3]։ Ոչ մէկը եւ ոչ մէկալը (keines von Beiden), ես ջութակ[4] կը զարնեմ։ Անհանգի՞ստ էք, տիկին (gnädige Frau)։ Այո, ակռայի եւ վզի ցաւ ունիմ։ Գերմաներէն կը սորվիմ։ Նաեւ բնութեան վրայէն գծագրել կը սոր-

[1] Klavier. [2] Flöte. [3] spielen. [4] Violine.

վիմ։ Եղբայրս Շէքսփիրի (von Shakespeare) Համլէթ ողբերգութիւնը[5] կը կարդայ։ Եզովբոս Փոքր Ասիայի[6] Փռիւգիա (Phrygien) գաւառէն[7] էր։ Մեր մայրն այրի[8] է։ Ծառաս Գերմանացի է, կառապանս[9] Անգղիացի է։ Զօրապետը միտք ունէր (war der Ansicht) ճակատ տալու։ Անիկա երջանիկ պիտի ըլլայ, ձեզի ծառայութիւն մ'ընել կարենալուն։ Միջոց մը պիտի գըտնուի (man-ւ) այս երիտասարդին տեղ մը հոգալու[10]։

[5] Trauerspiel. [6] Klein-Asien. [7] Provinz էգ. տես եր. 5, ծն.։ [8] Witwe. [9] Kutscher. [10] verschaffen.

## *Ընթերցուած։*

## **Montausier.** *Մոնթօզիէ։*

Der Herzog von Montausier zeichnete sich frühe durch seine Tapferkeit und durch seine Klugheit aus. Seine Rechtschaffenheit[1] machte, daß er erwählt[2] wurde, um die Erziehung[3] des Dauphins (Տօֆին), des Sohnes Ludwigs des Vierzehnten, zu leiten[4]. Er sprach immer mit diesem Prinzen als tugendhafter Mann, der alles der Wahrheit und der Vernunft aufopfert[5]. In einer von ihren Unterredungen[6] bildete sich der Prinz ein, von seinem Erzieher[7] einen Schlag erhalten zu haben: „Wie, mein Herr", sagte er, „Sie schlagen mich! man bringe mir meine Pistolen."[8] — „Bringt meinem gnädigsten (վեհափառ) Herrn seine Pistolen," versetzte[9] der Herzog kalt. Er läßt sie ihm in die Hände geben: „Bedenken Sie, was Sie thun wollen!" Der Prinz fällt auf seine Kniee. — „Sehen Sie, wohin die Leidenschaften[10] führen!"

Einst führte er den Dauphin in eine Bauernhütte[11]. „Sehen Sie, mein gnädiger Herr, unter diesem Strohdach in dieser armseligen Stube[12] wohnen der Vater, die Mutter und die Kinder, welche ohne Aufhören[13] arbeiten, um das Geld zu bezahlen, womit Ihre Paläste geschmückt sind, und welche Hungers sterben, um die Kosten[14] Ihrer Tafel zu bestreiten."[14]

Als er das Amt eines Erziehers niedergelegt hatte, sagte er zum Dauphin: „Gnädigster Herr, wenn Sie ein tugendhafter Mann sind, so werden Sie mich lieben; sind Sie es nicht, so werden Sie mich hassen[15], und ich werde mich[16] darüber trösten"[16].

[1] արդարութիւն. [2] ընտրել. [3] կրթութիւն, դաստիարակութիւն. [4] վարել. [5] զոհել. [6] խօսակցութիւն. [7] դաստիարակ. [8] ատրճանակ. [9] պատասխանել. [10] կիրք. [11] գեղացւոյ հիւղ. [12] խուց. [13] անդադար. [14] ծախքը հոգալ՝ վճարել. [15] ատել. [16] մխիթարուիլ։

## *Խօսակցութիւն:*

| | |
|---|---|
| Wodurch zeichnete sich der Herzog von Montausier frühe aus? | Durch Tapferkeit und Klugheit. |
| Was bewirkte seine strenge Rechtschaffenheit? | Sie bewirkte, daß er zum Erzieher des Dauphins erwählt wurde. |
| Wer war der Dauphin? | Der Sohn Ludwigs XIV. |
| Wie sprach M. immer mit dem Prinzen? | Als tugendhafter Mann. |
| Wem opferte er alles? | Der Wahrheit und Vernunft. |
| Was bildete sich der Prinz einmal ein? | Einen Schlag von Montausier erhalten zu haben. |
| Welche Genugthuung wollte er dafür haben? | Er ließ sich Pistolen bringen. |
| Was sagte der Herzog zu ihm? | „Bedenken Sie, was Sie thun wollen". |
| Wie machte der Prinz diesen Fehler wieder gut? | Er fiel auf seine Kniee und bat seinen Lehrer um Verzeihung. |
| Wohin führte Montausier einmal den Prinzen? | In eine Bauernhütte. |
| Was sprach er zu ihm? | „Sehen Sie, gnädiger Herr, unter diesem Strohdach wohnt die ganze Familie, welche եւն.։ |

---

# ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ԵՐՐՈՐԴ ԴԱՍ

## ԳՈՅԱԿԱՆԱՑ ԻՐԱՐՈՒ ՀԵՏ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆԸ

*Երկու գոյականք իրարու հետ երեք կերպով կրնան յարաբերութեան մէջ մտնել կամ իրարու կցիլ. այսինքն՝ 1. սեռականով (յատկացուցչով), 2. երկրորդ յարակից ուղղականով եւ 3.* von *կամ ուրիշ նախադրութեամբ մը։*

### *Ա. ՍԵՌԱԿԱՆԻ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ*

*1. Բանի մը տէր ըլլալու կամ ստացման եւ բանէ մը նախում ունենալու յարաբերութիւնները սովորաբար սեռականով կը բացատրուին, եթէ որոշուած գոյականը մասնական իմաստով (տես Ա. Մաս, ԺԱ. Դաս.) չէ առնուած։ Աս սեռականը յատկացուցիչ կը կոչուի, իսկ քովի գոյականն յատկացեալ։ Գերմաներէնի սովորական շարադասութեան մէջ յատկացուցիչը յատկացեալէն վերջը կը դրուի, հակառակ աշխարհաբար հայերէնի դասաւորութեան։ Օր.*

Der Hund des Gärtners *պարտիզպանին շունը.*
Das Dach des Hauses *տան յարկը.*
Die Farbe der Blume *ծաղկին գոյնը.*
Der Fleiß eines Schülers *աշակերտի մը փոյթը։*

Շատ անգամ կրնայ շարադասութիւնը շրջուիլ, այսինքն յատկացուցիչն յատկացեալէն յառաջ դրուիլ, մանաւանդ՝ եթէ յատկացուցիչն անձ մը ցուցընէ. բայց այսպիսի դիպաց մէջ յատկացեալին յօդը կը զեղչուի (Հմմտ. եր. 4. 4.)։ Օր.

Des Gärtners Haus պարտիզպանին տունը.
Des Fürsten Wunsch իշխանին բաղձանքը.
Des Kaisers Räte կայսեր խորհրդականները.
Mein und meines Bruders Freund իմ եւ եղբօրս բարեկամը։

**ՄԴ.** Այս շրջումն իգական անուանց մէջ շատ չի գործածուիր. Օր.

Die Räte der Kaiserin, լաւագոյն է քան՝ der Kaiserin Räte.
Der Wunsch der Mutter, լաւագոյն քան՝ Der Mutter Wunsch.

2. **Յատկացուցիչը** կրնայ von նախադրութեամբ ալ ըլլալ. զ. օ. Der König von Schweden Շուետի թագաւորը (Հմմտ. եր. 12. Գ.)։

3. **Այս** խմբին տակ կ'երթան բարդ գոյականներն ալ, որոնց կազմութեան առաջին մասը սովորաբար յատկացուցիչ սեռականի իմաստով ուղղական հոլով դրուած գոյական մըն է։ Օր.

Die Milchsuppe կաթնապուր.
die Hausthüre (փխնկ. Hauses=thüre) տան դուռ.
Der Schullehrer (փխնկ. Schulelehrer) վարժապետ։

**ՄԴ.** Աշակերտը կը խաւրենք Ա. Մասն, Ժ. Դասին, ուր ամէն մէկ հոլովման համար բարդ բառերու քանի մ'օրինակներ դրած ենք. ասոնց թիւն անչափ է, եւ գերմաներէն լեզուն արտաքոյ կարգի ազատ է բարդելու մէջ. բայց նորուս օտարական մը պէտք չէ ինքն իրեն նոր բառեր բարդել։

4. **Այս** բարդութիւնք հայերէն լեզուին մէջ կամ նոյնպիսի բարդութեամբք կրնան բացատրուիլ, (զոր պէտք չէ անճահ կերպով յաճախել,) եւ կամ երկու երեք բառով, որոնց առաջինը շատ անգամ սեռական հոլով, երբեմն ալ ածական մը կրնայ ըլլալ։ Օր.

Das Erdbeben երկրաշարժ.
Die Erdkugel երկրագունդ.
Der Fensterflügel պատուհանի փեղկ.
Der Raubvogel յափշտակող թռչուն.
Das Hauptaltar աւագ խորան.
Die Weltgeschichte ընդհանուր պատմութիւն։

**Ծնթ.** Պէտք է միտ դնել, որ բարդութեան անդամոց տեղափոխութեամբն իմաստն ալ կը փոխուի։ Օր.

Der Obstbaum պտղատու ծառ.
Das Baumobst ծառի պտուղ.
Der Ölbaum ձիթենի.
Das Baumöl ձէթ, եւն.։

5. Բարդութեանց մէջ երբեմն հնչման անուշութեան համար ինչ ինչ յօդակապ գրեր կ'աւելցուին, ինչպէս են՝ Տ, Ո կամ Ե. Օր։

Der Geburtstag ծննդեան օր.
Die Wahrheitsliebe ճշմարտասիրութիւն.
Die Taschenuhr ծոցի ժամացոյց.
Die Rosenknospe վարդի կոկոն.
Der Suppenlöffel ապուրի դգալ.
Das Schweinefleisch խոզի միս։

## Բ. ՑԱՐԱԿԻՑ ՈՒՂՂԱԿԱՆ

Սո (երկրորդ) յարակից ուղղականի (Ջենիթիվ) գործածութիւնը կ'ըլլայ՝

1. Գաւառներու, կղզիներու, քաղաքներու, գեղերու, ամիսներու եւ այլն անուանքն իրենց հասարակ անուան վրայ աւելցընելով։ Օր.

Das Königreich Spanien Սպանիայի թագաւորութիւնը.
Die Insel Malta Մալթա կղզին.
Die Stadt Ani Անի քաղաքը.
Die Universität Heidelberg Հայտելպերկի համալսարանը.
Der Monat Mai Մայիս ամիսը։

2. Եթէ բառ մը չափ, կշիռ, թիւ կամ քանակութիւն ցուցընող գոյականէ մը վերջը միանական իմաստով գրուած է։ Օր.

Eine Flasche Wein շիշ մը գինի.
Zehn Meter Leinwand տասը մեդր կտաւ.
Ein Glas Wasser գաւաթ մը ջուր.
Ein Kilo Butter մէկ քիլօ կարագ.
Ein Regiment Soldaten[1] զինուորաց գունդ մը.
Ein Stück Holz փայտի կտոր մը.
Eine Herde Schafe[1] ոչխարաց հօտ մը.
Ein Paar Handschuhe[1] զոյգ մը ձեռնոց.
Ein Dutzend Hemden[1] երկոտասնեակ մը շապիկ։

Ծնթ. Եթէ երկրորդ գոյականը հետը ածական մ'ունենայ, պէտք է նոյնը սեռականի փոխել։ Օր. eine Flasche guten Weines. Բայց ընտանեկան խօսակցութեանց մէջ ներեալ է սեռականի վերջաւորութիւնը կրճատել եւ ըսել՝ eine Flasche guten Wein.

## Հրահանգ. 131.

Die Lage des Schlosses ist prächtig. Des Kaisers Wille muß geschehen[1]. Der Knaben Fleiß ist belohnt worden. Bringen Sie

[1] ըլլալ. կատարուիլ.

---

[1] Եթէ այս չափ, քանակութիւն եւն. ցուցընող գոյականք մէկէն աւելի բան մը նշանակեն առջեւի գոյականը գերմաներէնի մէջ յոգնակի կը դրուի, հակառակ հայերէնի որ եզակի է, ինչպէս վերի օրինակներէն կը տեսնուի։

mir eine Kaffeetasse, einen Theelöffel und einige Weingläser. Ich habe einen goldenen Uhrschlüssel verloren. Welch eine schöne Rosenknospe! Es ist eine Moosrose[2]. Ich habe diesen Morgen zwei Paar Handschuhe und fünf Meter schwarzes Tuch gekauft. Hier sind drei Flaschen Bier und ein Stück Brot. Die Stadt London ist größer als die Stadt Paris; sie hat über vier Millionen Einwohner. Die Haustiere[3] sind von großem Nutzen. Die Universität Heidelberg ist berühmt.

2 մամռավարդ. 3 ընտանի անասուն։

## Շարադրութիւն. 132.

Աշակերտին փոյթը[1] յարատեւ[2] է։ Արծուին կտուցը[3] կոր (gebogen) է, ինչպէս յափշտակող թռչուններուն* կտուցները։ Տղաք զատկական հաւկիթները շատ կը սիրեն։ Այս ողորմելի հիւղը[4] ձկնորսի[5] ընտանեաց մը բնակարանն է։ Անգղիայի թագուհին Գոպուրկ-Սաքսոնի (Sachsen-Koburg) Ալպերդոս (Albert) իշխանին հետ ամուսնացաւ[6]։ Հռովմ քաղաքը շատ հին է։ Կաթիլ մը ջուր բազմութիւն մը (eine große Anzahl) անասնիկներու[7] կը բովանդակէ։ Կենաց ճշմարիտ երջանկութիւնը բարի խիղճ մ'[ունենալու] վրայ կը կայանայ[8]։ Արեգական ճառագայթներուն ցոլացումը[9] ծիրանի գօտւոյ[10] գոյները յառաջ կը բերէ[11]։ Ինծի փայտի կտոր մը բերէք։ Երիտասարդը սաստիկ մեծ գումար[12] մը կորսնցուց։ Պտղունց մը (eine Prise) քթախոտ (Tabak) կ'ուզէ՞ք։ Շնորհակալ եմ, ես քթախոտ չեմ առներ (ich schnupfe nicht)։ Բազմութիւն մը[13] զուարթ[14] տղոց բակին եւ պարտիզին մէջ կը խաղային։ Կօշկակարն երեք զոյգ հողաթափ, երկու զոյգ կօշիկ եւ զոյգ մը շղուական բերած է։

1 der Fleiß. 2 beständig. 3 der Schnabel. 4 die Hütte. 5 der Fischer. 6 heiraten. 7 Tierchen. 8 besteht. 9 die Brechung. 10 der Regenbogen. 11 hervor'bringen. 12 Summe. 13 eine Menge. 14 fröhlich.

### Գ. **Von** ԵՒ ՈՒՐԻՇ ՆԱԽԱԴՐՈՒԹԵԱՆՑ ԳՈՐԾԱԾՈՒԹԻՒՆԸ

Երկու գոյականաց իրարու հետ ունեցած յարաբերութիւնը ցուցընելու համար **von** կը գործածուի՝

1. Տէրոջ կամ պատուաստիճան մը ցուցընող բառերէն ետքը։ Օր.

Der König **von** Schweden Շուէտի թագաւորը.
Die Königin von England Անգղիայի թագուհին.

* Այս շարադրութեան մէջ նօտր գրով գրեալները խոշոր բառերով թարգմանելու է։

Der Herzog von Malakoff Մալաքոֆի դուքսը.
Der Freiherr von Röderer Ռէօտերերի պարոնը.
Der Pascha von Adana Ատանայի փաշան։

2. Բացարձակ թուականաց առջեւ։ Օր.

Ein Knabe von zwölf Jahren տասուերկու տարեկան տղայ մը.
Eine Entfernung von sechs Kilometer վեց քիլոմեթրի հեռաւորութիւն.
Eine Länge von hundert Meter հարիւր մեթր երկայնութիւն։

3. Նիւթը կամ տարրը ցուցընելու համար, որմէ բան մը շինուած է։ Օր.

Ein Haus von Stein քարաշէն տուն մը.
Ein Ring von Gold ոսկի մատանի մը.
Eine Bildsäule von Marmor մարմարէ արձան մը։

Ծան. Նիւթը ցուցընելու համար, ինչպէս հայերէնի՝ նոյնպէս գերմաներէնի մէջ ալ կրնայ շատ անգամ նոյն նիւթին ածականը գործածուիլ. ein steinernes Haus, ein goldener Ring ոսկի մատանի մը. eine marmorene Bildsäule մարմարեայ արձան մը։ Նմանապէս կ'ըսուի die holländische Leinwand հոլանտական կտաւ. der russische Gesandte Ռուսի դեսպան. das französische Geld Գաղղիայի (գաղղիական) դրամ եւն։

4. Եթէ յատկացուցիչը մասնական իմաստով գործածուած է, եւ յատկացեալը քանակութիւն ցուցընող բառ չէ։ Օր.

Die Nähe von Städten քաղաքաց շրջակայքը.
Der Verkauf von Büchern գրոց վաճառումը.
Eine Sammlung von Gemälden պատկերաց հաւաքածոյք մը.
Eine Reihe von Bäumen ծառերու շարք մը.
Eine Sache von Wert արժէք ունեցող իր մը.
Ein Freund von Blumen ծաղիկներու բարեկամ մը.
Ein Mann von Verdienst արդիւնաւոր մարդ մը։

5. Ցուցական, յարաբերական եւ անորոշ ածականներէն վերջը փոխանակ սեռականի, (որ քիչ գործածական է,) սովորաբար von նախադրութիւնը կը գործածուի։ Օր.

Derjenige von Ihren Schülern[1], welcher ...
Ձեր աշակերտներուն մէջէն անիկա, որ ...
Welches von diesen Pferden ist das Ihrige?
Einige von meinen Freunden կամ meiner Freunde.
Die meisten seiner Gemälde կամ von seinen Gemälden.

Ծան. Գերադրական ածականէ կամ դասական թուականէ վերջը կրնայ հաւասարապէս սեռական կամ von, շատ անգամ ալ unter գործածուիլ ըստ քաղցրահնչութեան։ Օր.

Die schönste aller Künste կամ von (կամ unter) allen Künsten.
Der erste meiner Unterthanen կամ von meinen Unterthanen.

---

[1] Derjenige Ihrer Schüler, welcher — աղէկ չի հնչեր։

6. Հետեւեալ ասացուածներու մէջ.

Ein Engländer von Geburt ի ծնէ Անգղիացի մը.
Die Einwohner von Brüssel Պրիւսելի բնակիչքը.
Ein Pferd von brauner Farbe թխագոյն ձի մը.
Ein Mann von Ihrem Schlage ձեր բնութեանը համաձայն մարդ մը։

7. Այնպիսի գոյականներ՝ որոնք ածականէ կամ բայէ մ'ածանցեալ են, եւ կրնան խնդիր առնուլ, սովորաբար նոյն ածականին կամ բային առած նախադրութիւնը կ'ուզեն։ Օր.

Der Gedanke an den Tod մահուան յիշատակը (denken an ...).
Die Furcht vor der Gefahr վտանգէ երկիւղը.
Aus Mangel an Geld ստակի պակասութենէ.
Der Reichtum an Kenntnissen բազմահմտութիւն.
Die Sorge für die Kinder տղոց հոգը եւն.։

## Հրահանգ. 133.

Der Matrose[1] hatte ein Kleid von wollenem Tuche. Der Marschall Pelissier erhielt vom Kaiser Napoleon den Titel eines Herzogs von Malakoff und eine jährliche Rente[2] von 100.000 Franken. Die Königin von England ist stolz auf ihre Marine[3]. Wir erwarten jeden Tag einen Brief von Herrn P. Die Liebe zum Leben ist allen Menschen angeboren[4], dagegen die Furcht vor dem Tode ist ihnen anerzogen[5]. Das Verlangen[6] nach Reichtum veranlaßte[7] diesen Mann, so großartige Unternehmungen[8] zu machen. Welcher von diesen Knaben hat den ersten Preis[9] erhalten? Es war Julius; er war der erste von fünfzig Schülern. Man baut jetzt ganze Schiffe von Eisen. Ist dieser Ring von Gold oder von Silber? Er ist von Gold.

[1] նաւաստի. [2] մուտք. [3] նաւական զօրութիւն. [4] բնածին. [5] կրթութեամբ սեպհականուած. [6] բաղձանք. սէր. [7] պատճառ ըլլալ. [8] մեծագործ ձեռնարկութիւն. [9] մրցանակ։

## Թարգմանութիւն. 134.

Շարք մը[1] ճերմակ ակռաներու իւր սիրուն դէմքն[2] աւելի կը գեղեցկացընէին (եղ.)։ Ստակի պակասութենէն իմ դէպ ի Բարիզ ճանապարհորդութիւնս գալ շաբթուան (auf... հյց.ով) թողուցի (... verschoben)։ Քսան տարեկան մատաղ (jung) աղջիկ մը իւր կեանքն հայրը փրկելու[3] համար զոհեց[4]։ Մենք երկու քիլոմետր հեռաւորութեամբ (in ...) փայտաշէն տուն մը նշմարեցինք։ Կայսրը 80.000 մարդով բանակաւ մը չուեց[5]։

[1] eine Reihe (von). [2] Gesicht չ. [3] retten. [4] opfern [5] ziehen.

Թունոյ վաճառումն[6] արգելուած[7] է։ Իմ վարպետս ի ծնէ գերմանացի է։ Ձեր ժամացոյցի շղթան[8] ոսկիէ՞ թէ արծաթէ է։ Ոսկիէ է։ Քանի՞ փունտ (Pfund) շաքար կ'ուզէք։ Ինծի չորս փունտ շաքար եւ երկու փունտ խահուէ տուէք։ Մեր քոյրերէն մէկը մեռած է։

[6] der Verkauf. [7] verboten. [8] Kette էֆ.։

## Ընթերցուած:

### Alfons der Fünfte. Ալփոնսոս Ե.:

Alfons der Fünfte, König von Arragonien, mit dem Beinamen (մականուն) der Großmütige[1], war der Held seines Jahrhunderts, er dachte nur darauf, andere glücklich zu machen. Dieser Fürst ging gerne ohne Gefolge[2] und zu Fuß durch die Straßen seiner Hauptstadt. Als man ihm einst Vorstellungen[3] über die Gefahr machte, welcher er seine Person aussetzte[4], so antwortete er: Ein Vater, welcher mitten unter seinen Kindern umher'geht, hat nichts zu fürchten." — Man kennt folgenden Zug[5] von seiner Freigebigkeit[6]: Als einer von seinen Schatzmeistern[7] ihm eine Summe von tausend Dukaten brachte, so sagte einer von seinen Offizieren, welcher eben zugegen[8] war ganz leise (կամաց) zu jemand: „Wenn ich nur diese Summe hätte, würde ich glücklich sein". — „Da Sie ein Mann von Kopf und Herz sind, so verdienen Sie es zu sein!" sprach der König, welcher es gehört hatte, und ließ ihn diese tausend Dukaten mit sich nehmen.

Auch der folgende Zug gibt einen Beweis (ապացոյց) von seinem edlen Charakter: Eine mit Matrosen und Soldaten beladene[9] Galeere[10] ging unter; er befiehlt, ihr Hilfe zu leisten[11]; man zögert[12] aus Furcht vor der Gefahr. Da springt Alfons selbst in ein Boot, indem er zu denen, welche sich vor der Gefahr fürchteten, sagte: „Ich will lieber der Gefährte[13] als der Zuschauer[14] ihres Todes sein."

[1] մեծանձն. [2] շքադիր, յուղարկաւորք. [3] ազդարարութիւն. [4] (վտանգի մէջ) դնել. [5] (նշանաւոր) գործք. [6] առատաձեռնութիւն. [7] գանձապետ. [8] ներկայ, մօտ. [9] բեռնաւորեալ. [10] ցռկանաւ. [11] օգնութեան հասնիլ, օգնել. [12] վարանիլ, դանդաղիլ. [13] ընկեր. [14] հանդիսատես, վկայ։

## Խօսակցութիւն:

| | |
|---|---|
| Wer war Alfons der Fünfte? | Er war König von Arragonien. |
| Welchen Beinamen hatte er? | Er hieß der Großmütige. |
| Worauf war er nur bedacht? | Andere glücklich zu machen. |

| | |
|---|---|
| Wie ging er gern durch die Straßen der Stadt? | Ohne Gefolge und zu Fuß. |
| Welche Vorstellungen machte man ihm deshalb? | Daß er seine Person einer Gefahr aussetzte. |
| Was antwortete er darauf? | Ein Vater hat unter seinen Kindern nichts zu fürchten. |
| Was brachte ihm einmal sein Schatzmeister? | Eine Summe Geldes. |
| Wer war gerade zugegen? | Ein Offizier. |
| Was sagte dieser Offizier leise in seiner Gegenwart? | „Ich würde glücklich sein, wenn ich dieses Geld hätte." |
| Wie viel war dieses Geld? | Es waren tausend Dukaten. |
| Was sagte darauf der König? | „Wenn diese Summe dich glücklich macht, so sollst du sie haben." |
| Wie bewies er ein anderes Mal seine Menschenfreundlichkeit (*մարդասիրութիւն*). | Als eine mit Soldaten beladene Galeere untersank, befahl er, ihnen zu Hilfe zu eilen. |
| Und als niemand helfen wollte, was that er? | Er sprang selbst in ein Boot und ruderte (*թիավարելով երթալ*) ihnen zu Hilfe. |
| Welche edlen Worte sprach er bei dieser Gelegenheit? | Er sagte: „Ich will lieber der Gefährte als der Zuschauer ihres Todes sein." |

---

# ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ՉՈՐՐՈՐԴ ԴԱՍ

## ԽՂԱՆԱԿԱՒՈՐԻՉ ՕԺԱՆԴԱԿՆԵՐՈՒՆ ՎՐԱՅ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆՔ

(Տես Ա. Մասն, ԺԹ. Դաս։)

*Այս բայերն գրեթէ նոյնանշան ըլլալուն, իրենց ճիշդ նշանակութիւնները սորվելով գործածել կարենալու համար, հետեւեալ դիտողութեանց միտ դնելու է։*

### *Ա.* Können.

1. Können *ֆիզիգական կարողութիւն (հնարաւորութիւն) մը կը ցուցընէ, եւ կը համապատասխանէ* կարենալ, կարող ըլլալ, ի վիճակի ըլլալ (im stande sein) *բայերուն։* Օր.

Ein Lahmer kann nicht gehen (ist nicht im stande zu gehen).
Կաղ մը քալել չի կրնար (ի վիճակի չէ)։

2. Können *կը նշանակէ նաեւ՝ լեզու մը կամ արուեստ մը* գիտնալ, *կամ աշխատութեամբ ստացուած աջողակութիւն մ'ունենալ։* Օր.

Können Sie Französisch? Գաղղիերէն գիտէ՞ք.
Nein, ich kann nicht Französisch, aber ich kann Englisch.
Ոչ. Գաղղիերէն չեմ գիտեր, բայց Անգղիերէն գիտեմ.
Mein Bruder kann nicht reiten.
Եղբայրս չի կրնար (աջողակութիւն չունի) ձի հեծնալ(ու).
Dieser Knabe kann lesen, schreiben und zeichnen.
Այս տղան կարդալ, գրել եւ գծագրել գիտէ (կրնայ).

## β. Mögen.

1. Mögen կը նշանակէ՝ խօսողին կողմանէ թոյլ տուեալ կամ ենթեալ կարելիութիւն մը. Հայերէն՝ կարենալ, տալով ըլլալ բայերով կրնայ թարգմանուիլ. Աս բային տեղ կրնայ երբեմն können ալ գործածուիլ. Օր.

Sie mögen (können) herein kommen կրնաք (ազատ էք) ներս գալ(ու).
Du magst den Stock behalten գաւազանը կրնաս քովդ պահել.
Sie mögen den Brief lesen նամակը կրնաք կարդալ.
Es mag wahr sein կարելի է թէ ճշմարիտ ըլլայ.
Er mag ein ehrlicher Mann sein.
Կարելի է թէ պատուաւոր մարդ մ'ըլլայ.

2. Mögen կը նշանակէ նաեւ՝ բան մը սիրել, ուզել, բաղձալ (gern wollen). Օր.

Ich mag diesen Wein nicht այս գինին չեմ սիրեր.
Mag sie nicht tanzen? անիկա չ'ո՞ւզեր (չի՞ բաղձար) կաքաւել.
Ich hätte das Geschenk nicht annehmen mögen.
Պարգեւը չէի ուզեր ընդունիլ.

3. Mögen կը յայտնէ նաեւ՝ իղձ մը կամ բարեմաղթութիւն մը, եւ կը թարգմանուի՝ իցի՜ւ թէ, երանի՜ թէ. Օր.

Möchte ich Sie bald wiederſehen! իցի՜ւ թէ շուտ վերստին տեսնէի.
Möchten Sie glücklich sein! երանի՜ (իցի՜ւ) թէ երջանիկ ըլլայք.

## γ. Lassen.

1. Lassen կը նշանակէ՝ թողուլ (որ...), թոյլ տալ (որ...).

Ich lasse ihn schlafen կը թողում զինքը, որ քնանայ.
Lassen Sie mich in Ruhe զիս հանդարտ թողուցէք.
Lassen Sie mir das Buch գիրքն ինծի թող տուէք.

2. Lassen աներեւութէ մը յառաջ (ընել) տալ բայով կամ անցողականով կը բացատրուի. Օր.

Ich ließ sie hereinrufen զիրենք ներս կանչել տուի.
Ich habe dem armen Manne ein Paar Stiefel machen lassen.
Խեղճ մարդուն համար զոյգ մը կօշիկ շինել տուի.
Der Richter ließ den Dieb festnehmen.
Դատաւորն զգողը բռնել տուաւ.

Er ließ mich eine ganze Stunde warten.
Զիս ամբողջ ժամ մը սպասցուց.
Lassen sie ihn hereinkommen զինքը ներս մուծէք՝ մտցուցէք։

3. Lassen բայն հրամայականի յոգնակի առաջին դէմքը կազմելու ալ կը գործածուի։ Օր.

Lasset uns singen երգենք.
Lassen Sie uns spazieren gehen պտըտելու երթանք.
Lassen Sie uns eine Tasse Kaffee trinken սկահակ մը խահուէ խմենք։

4. Lassen փոխադարձ sich դերանուանը միացեալ՝ կարելիութիւն մը կը նշանակէ։ Օր.

Das läßt sich nicht begreifen ատիկայ իմանալ անկարելի է.
Darüber läßt sich vieles sagen ատոր վրայ շատ բան կարելի է զրուցել.
Das ließ sich voraussetzen ատիկա կ՚ենթադրուէր։

## Հրահանգ. 135.

Kannst du mir sagen, warum dein Bruder morgen nicht zu mir kommen kann? Diese Männer sind im stande, uns zu helfen. Der Knabe kann das Buch behalten[1], ich brauche es nicht mehr. Wenn unsere Soldaten die Stadt behaupten könnten, so wäre der Sieg nicht zweifelhaft[2]. Können Sie Deutsch? Nein, ich kann es noch nicht, aber ich lerne es. Ich hätte dort sein mögen. Wir ließen die Kinder bis acht Uhr schlafen. Ich werde es von dem Schreiner[3] machen lassen. Wer hat dieses Haus bauen lassen? Mein Nachbar hat es für seinen Sohn bauen lassen. Laß[4] den Kutscher anspannen (լծել)[4]. Der Richter ließ die Gefangenen vor sich kommen. Mein Herr, Sie haben lange auf sich warten lassen. Der Lehrer hat seine Schüler eine englische Übersetzung machen lassen.

[1] քովը պահել. [2] տարակուսական. [3] հիւսն. [4] բա՛ց կառապանին որ լծէ։

## Շարադրութիւն. 136.

Կրնա՞ք վաղը գալ փոխանակ այսօր[ուան]։ Ոչ, տէր իմ, չեմ կրնար։ Կրնաք մնալ, ուր որ էք։ Չէի կրնար դասս սորվիլ, վասն զի գիրքս չկրցայ գտնել։ Սիրով (gern) կ՚ուզէի աշխատիլ, եթէ կարենայի։ Կարդալ գիտէ՞ք։ Այո, կարդալ եւ գրել գիտեմ։ Քոյրս շատ աղէկ իտալերէն գիտէ։ Երանի՜ թէ անիկա (էգ.) երջանիկ ըլլար։ Երանի՜ թէ այս օրը տեսնէինք (erleben)։ Այս սալորները[1] չէ՞ք բաղձար ուտել։ Ոչ, զանոնք չեմ սիրեր։ Թոյլ տուէք, որ զայս ընեմ։ Իրեն (հյց.) ըսել տուին (man-ով), ինչ որ տեսած էր։ Իշխանն ինք զինքը նկարել[2] կու տայ։ Այս

[1] die Pflaume, Zwetsche. [2] malen.

մարդէն մի խաբուիր[3]։ Իրեն զոյգ մը հողաթափ ալ շինել պիտի տայ։ Դուրս երթանք։ Փորձենք[4] խեղճ տղան ազատելու։ Ասոր վրայ փոխելու[5] բան մը չկայ (daran läßt sich . . .)։

[3] sich betrügen lassen. [4] versuchen. [5] ändern.

## Դ. Sollen եւ müssen.

1. Sollen կը ցուցնէ պարտք մը․ müssen՝ ֆիզիքական կամ բարոյական հարկ մը, ստիպում մը. կը թարգմանուի՝ պէտք ըլլալ, հարկ ըլլալ, ստիպուիլ բայերով։ Օր․

Karl soll fleißig sein Կարոլոս պէտք է փութաջան ըլլալ.
Du sollst nicht stehlen պէտք չես գողնալ, մի գողնար.
Dieser Herr sollte seine Schulden bezahlen.
Այս Պարոնը պէտք էր իր պարտքերը վճարել.
Du hättest deine Lektion (Aufgabe) lernen sollen.
Պէտք էիր դասդ սորված ըլլալ.
Der Prinz muß um vier Uhr abreisen.
Իշխանը ստիպուած է ժամը չորսին ճամբայ ելլելու.
Die Schüler müssen aufmerksam sein.
Աշակերտք պէտք են մտադիր ըլլալ.
Ich werde die Rechnung bezahlen müssen.
(Պարտուց) հաշիւը վճարելու պիտի ստիպուիմ։

2. Sollen՝ բայց wenn շաղկապէն ետքը պատահական հնարաւորութիւն մը կամ դիպուած մը կը նշանակէ, եւ ըստ պատահման, դիցուք թէ, ըսենք թէ բառերով կը թարգմանուի։ Օր․

Wenn Sie (etwa) nicht zu Hause sein sollten.
Եթէ ըստ պատահման տունը չգտնուիք.
Wenn ihm das Geld ausgehen (fehlen) sollte.
Ըսենք թէ իրեն ստակ պակսելու ըլլայ.

3. Sollen երբեմն կը նշանակէ՝ կ՚ըսուի, կ՚ըսեն, կը կարծուի, . . . է եղեր եւն։ Օր․

Sie soll reich sein կ՚ըսուի թէ անիկա հարուստ է, հարուստ է եղեր.
Der Dieb soll aus dem Gefängnisse entkommen sein.
Գողը բանտէն փախեր է եղեր։

4. Sollen երբեմն կը նշանակէ հրաման մը եւ սովորաբար հրամայականի եզ. եւ յոգ. երրորդ դէմքերուն կամ ստորադասականին տեղ կը գործածուի։ Օր․

Er soll kommen թող գայ.
Sie soll die Wahrheit sagen թող ճշմարտութիւնը զրուցէ.
Er befahl, daß man hinausgehen sollte հրամայեց որ դուրս ելլեն։

5. Sollenէն վերջը երբեմն աներեւոյթը կը վերջուի, կամ զօրութեամբ կ՚իմացուի։ Օր․

Hier ist Johann, was soll er?։ Յովհաննէս հոս է. ինչ պիտ՚որ ընէ.
Was sollen diese Thränen? Այս արցունքներն ինչ պիտի նշանակեն։

## Բ. Dürfen.

1. Dürfen բառ ինքեան ոչ թէ իշխել, համարձակիլ կը նշանակէ, ինչպէս սովորաբար կը թարգմանուի, այլ՝ հրաման՝ թոյլտուութիւն ունենալ, չորենալ կը նշանակէ։ Օր.

Die Kinder dürfen diesen Abend spazieren gehen.
Տղաք կրնան (հրաման ունին) այս երիկուն պտըտելու երթալ.
Heinrich darf das Buch nicht behalten.
Հենրիկոս չի կրնար (հրաման չունի) գիրքը քովը պահել։

2. Ժխտականապէս գործածուած ատեն, պէտք չըլլալ, պէտք չունենալ, տեղի չունենալ կը նշանակէ։ Օր.

Du darfst nicht ausgehen դուն պէտք չես դուրս ելլել.
Wir durften nichts sorgen, alles war bereit.
Հոգ ընելու պէտք չունէինք, ամենայն ինչ պատրաստ էր.
Sie dürfen sich nicht darüber beklagen.
Անոր վրայ գանգատելու առիթ մը չունին։

### Հրահանգ. 137.

1. Wir sollen Gott und die Menschen lieben. Du sollst deinem Nächsten (ընկեր) nichts Böses nachreden (ետեւէն խօսիլ). Ihr solltet Gott danken, daß ihr aus dieser Gefahr gerettet worden seid. Wir sollen durch die Fehler anderer lernen, unsere eigenen zu verbessern. Wilhelm muß den ganzen Tag zu Hause bleiben. Du hättest nicht mit diesem Manne umgehen[1] sollen. Caligula befahl, daß die Römer ihm göttliche Ehre[2] erweisen[3] sollten. Der Graf soll auf der Jagd sein. Morgen soll der König in die Stadt kommen. Was soll diese ernsthafte[4] Miene? Was sollen alle diese Komplimente?

2. Ich werde ihn retten, und sollte ich auch mein Leben opfern[5]. Ich darf keinen Wein trinken. Sie dürfen diesen Brief lesen, wenn Sie Lust haben. Der Gefangene durfte sein Weib und seine Kinder nicht mehr sehen, bevor er auf das Schiff gebracht wurde. Man darf ihm nur ins Gesicht sehen, so erkennt man den Dieb. Darf ich Sie morgen besuchen? Diese Mädchen werden heute nicht auf den Ball[6] gehen dürfen, wenn ihre Mutter nicht besser wird[7]. Darf man fragen woran Sie denken?

1 կենակցիլ. 2 աստուածային պատիւ. 3 տալ, մատուցանել. 4 խիստ՝ ծանր կերպարանք. 5 զոհել. 6 պարահանդէս. 7 ապաքինել։

### Տարադրութիւն. 138.

1. Պէ՞տք եմ մնալ։ Ոչ, դուք պէտք էք ճամբայ ելլել։ Անիկա (էգ.) պէտք չէր ալ իրեն վրայ մտածել։ Պէտք էք ժամը

չորսին հոս ըլլալ։ Մարդիկ պէտք են աշխատիլ, եթէ ապրիլ կ'ուզեն։ Ամէն բանէն (յ+.) յառաջ պէտք է մարդս (man) իր պարտուցը¹ վրայ մտածել։ Թող իւր յանցանքներն խոստովանի²։ Ըսէք իրեն, որ գայ։ Ինծի գաւաթ մը ջուր բերէք։ Կ'ըսուի [թէ] թագաւորն վտանգաւոր³ հիւանդ է։ Այս ամէն տրտունջներն⁴ ինչո՞ւ համար են (was sollen ...)։ Անիկա կ'ուզէր որ ես անմիջապէս ճամբայ ելլեմ։ Այս շփոթութեան⁵ մէջ ի՞նչ պէտք եմ ընել։ Ի՞նչ որոշում⁶ պէտք եմ ընել⁶։ Չեմ գիտեր թէ ո՛ր [որոշումն] ընեմ⁶։ Պիտի երթամ, [թէ]եւ անով (dabei) կեանք[ս] կորանցընել հարկ ըլլար։

2. Կրնա՞մ դուրս երթալ։ Այո, Ձեզի հրաման կու տամ դուրս երթալու։ Կրնա՞մ գիտնալ, [թէ] ի՞նչ բան Ձեր եղբայրը Ձեզի գրած է։ Նամակը կրնաք դուք անձամբ կարդալ։ Հիւանդը պէտք չէ գինի խմել, բայց կրնայ շաքարաջուր⁷ խմել։ Տէր իմ, դուք պէտք չէք կերակրոյ⁸ (Նյց.) [ստակը] վճարել, ես յանձն կ'առնում⁹ զայն։ Եթէ Ձեր վարպետն իմանար (ստրդ.)¹⁰, որ Դուք հոս էք, զՁեզ աղէկ մը¹¹ կը կշտամբէր¹² (դյմ.)։ Կ'ըսեն [թէ] խաղաղութիւնը¹³ ստորագրուած է։

¹ die Pflicht. ² gestehen. ³ gefährlich. ⁴ die Klage. ⁵ die Verlegenheit. ⁶ (einen) Entschluß fassen. ⁷ Zuckerwasser. ⁸ Mittagessen. ⁹ übernehmen. ¹⁰ erfahren. ¹¹ tüchtig. ¹² ausschelten. ¹³ der Frieden.

## *Ընթերցուած:*

### Die sechs Wörtlein. *Վեց բառք:*

Sechs Wörtlein nehmen¹ mich in Anspruch¹ jeden Tag:
Ich soll, ich muß, ich kann, ich will, ich darf, ich mag.
Ich soll ist das Gesetz, von Gott ins Herz geschrieben,
Das Ziel, nach welchem ich bin von mir selbst getrieben².
Ich muß, das ist die Schrank'³, in welcher mich die Welt
Von einer — die Natur von andrer — Seite hält.
Ich kann, das ist das Maß der mir verlieh'nen Kraft,
Der That, der Fertigkeit⁴, der Kunst und Wissenschaft⁵.
Ich will, die höchste Kron' ist dieses, die mich schmückt⁶,
Das ist der Freiheit Siegel, dem Geiste aufgedrückt.
Ich darf, das ist zugleich die Inschrift⁷ bei dem Siegel,
Beim aufgethanen Thor der Freiheit auch ein Riegel⁸.
Ich mag, das endlich ist was zwischen allen schwimmt.

¹ կը զբաղցընեն զիս. ² մղուած. ³ սահման, եզր. ⁴ աջողակութիւն. ⁵ գիտութիւն. ⁶ զարդարել. ⁷ խորագիր. ⁸ պարզունակ.

Ein Unbestimmtes[9], das der Augenblick bestimmt[10].
Ich soll, ich muß, ich kann, ich will, ich darf, ich mag,
Diese Sechse nehmen mich in Anspruch jeden Tag.
Nur wenn Du[11] stets mich lehrst, weiß ich, was jeden Tag
Ich soll, ich muß, ich kann, ich will, ich darf, ich mag.

Rückert.

9 անորոշ բան մը. 10 կ'որոշէ. 11 Դուն, ով Տէր։

---

# ՔԱՌԱՍՆԵՐՈՐԴ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՍ

## ԴԵՐԱՆՈՒԱՆՑ ԳՈՐԾԱԾՈՒԹԵԱՆ ՎՐԱՅ ԴԻՏՈՂՈՒԹԻՒՆՔ

(Տես Ա. Մասն, ԻԵ., ԻԶ. եւ ԻԷ. Դասերը։)

### *Ա. ԱՆՁՆԱԿԱՆ ԵՒ ՍՏԱՑԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒԱՆՔ*

1. *Թէ՛ եզակի եւ թէ՛ յոգնակի առաջին եւ երկրորդ դէմքի անձնական դերանուանէ մը վերջը, եթէ հարկ ըլլայ յարաբերական դերանուն գործածել՝ պէտք է* der, die, das *դնել, եւ այս յարաբերականէն անմիջապէս ետքն անձնական դերանունը կրկնել*։ Օր.

Ich, der ich ihn kenne *ես՝ որ զինքը կը ճանչնամ*.
Du, der du ihn nicht gesehen hast *դուն՝ որ զինքը չես տեսած*.
Wir, die wir jung sind *մենք՝ որ երիտասարդ ենք*։

2. *Անձնական դերանուան սեռականը սովորաբար կը գործածուի սեռական խնդիր առնող բայերէն վերջը եւ բացարձակ թուականներէն յառաջ*։ Օր.

Er spottete meiner *զիս ծաղրեց (կը ծաղրէր)*.
Ich erinnere mich seiner *զինքը յիշեմ*. [*գացինք*.
Unser zwölf gingen *մենք տասներկու հոգի (տասներկուքնիս)*
Sie waren ihrer elf *անոնք տասնումէկ հոգի էին*։

Deinetwegen *քեզի համար*, um seinetwillen *իրեն պատճառաւը*, ihretwegen *եւն. բացատրութիւնները տես* Ա. Մասն, *եր.* 245, ՄԴ։

3. *Երբ թէ՛ անուն բային եւ թէ՛ դերանուան խնդիրն երրորդ դէմք են, գերմաներէնի մէջ իւր, իրեն, իրենց եւն. բառերուն տեղը՝* sich *փոխադարձ դերանունը կը գործածուի, եւ ոչ՝* ihn, sie, ihm, ihnen *եւն*։ Օր.

Er spricht immer von sich *միշտ իւր (անձին) վրայ կը խօսի*.
Sie denkt nur an sich *միայն իւր (անձին) վրայ կը խորհի*.
Diese Herren haben immer Geld bei sich.
Այս *տեարք քովերնին (իրենց քովը) միշտ ստակ կ'ունենան*։

4. Երբեմն Հայերէնի ստացականին տեղ գերմաներէնի մէջ անձնական կամ փոխադարձ դերանուն կը գործածուի: Օր.

Er ist ein Freund von mir անիկա իմ բարեկամներէս մէկն է.
Grüßen Sie ihn von mir իրեն իմ կողմանէս բարեւ ըրէք.
Ich habe mich in den Finger geschnitten (փխնկ. ...meinen Finger...) մատս կտրեցի.
Der Knabe muß sich die Hände waschen.
Տղան պէտք է (իւր) ձեռուըները լուալ.
Sie fiel ihm zu Füßen անոր ոտուըներն ինկաւ.
Ihm zu Ehren իր պատուոյն համար.
Die Reihe ist an mir, an Ihnen կարգն իմս է, Ձերն է. եւն.

5. Գլխաւոր նախադասութեան մէջ շատ անգամ շարադասութեան շրջմամբ, գոյական անուն բային բայէն վերջը կը դրուի, եւ իրեն տեղ նախադասութեան սկիզբն es դերանունը կ'աւելցուի եզ. եւ յոգ. երեք սեռի համար ալ: Օր.

Es lebe der König կեցցէ արքայ.
Es glaubt ihm niemand ոչ ոք իրեն կը հաւատայ.
Es kamen zwei Frauen, die uns den Weg zeigten.
Երկու կանայք եկան՝ որոնք մեզի ճամբան ցուցուցին:

6. Հարցման մը պատասխանին մէջ նախընթաց գոյականը կամ ածականը, եւ նոյն իսկ ամբողջ նախադասութիւնը նշանակելու համար es կը գործածուի (Հմմտ. Ա. Մաս, եր. 130, § 4.): Օր.

| | |
|---|---|
| Sind Sie die Mutter dieses Kindes? | Դո՞ւք էք այս տղուն մայրը. |
| Ja, ich bin es. | Այո, ես եմ. |
| Ist Herr A. zufrieden? | Տէր Ա. գո՞հ է. |
| Nein, er ist es nicht. | Ոչ, անիկա գոհ չէ. |
| Sind das die Söhne des Herrn B. | Ասոնք Տէր Բ.ին որդիքն են. |
| Ja, sie sind es. | Այո, անոնք (նոյներն) են: |

7. Իմս է, ինծի կը վերաբերի բացատրութիւնները գերմաներէնի մէջ gehörenով, բայց նաեւ ստացական դերանուամբ կը թարգմանուին. այսպիսի դիպաց մէջ ստացականը ստորոգելի ածականներու պէս նախադասութեան վերջը կը դրուի առանց զանազանութեան թուի եւ սեռի: Օր.

Dieser Stock ist mein (կամ gehört mir).
Այս գաւազանն իմս է.
Jener Hut ist sein (կամ gehört ihm).
Այն գլխարկն իրեն կը վերաբերի:

8. Հայերէնի մէջ անձնական դերանուան տեղ դրուած ս, դ, ն դիմորոշ յօդերն՝ անձնական դերանուամբ կը թարգմանուին, բայց եթէ այն յօդերն ցուցական կամ ստացական դերանուան տեղ դրուած են, ցուցական կամ ստացական դերանուամբ կը թարգմանուին: Օր.

(Մենք) Հայքս շողոքորթութիւն չենք սիրեր.
Wir Armenier lieben die Schmeichelei nicht.
Արարիչդ եւ փրկիչ Du Schöpfer und Erlöser!
Քաջդ Տրդատ Du tapferer Tiridates!
Աշխարհքս անցաւոր է Diese Welt ist vergänglich.
Գաւազանս ո՞ւր է Wo ist mein Stock?
Գաւազանդ հոս չէ Dein Stock ist nicht hier.

## Հրահանգ. 139.

Ich, der ich alles mit eigenen Augen gesehen habe, kann das beste Zeugnis[1] geben. Süßer Friede, der du vom Himmel kommst, erfülle mein Herz. Die jungen Leute verzeihen einander leicht ihre Thorheiten[2]. Werden Sie alle Bücher behalten, die ich Ihnen gestern geschickt habe? Ich kann noch nicht sagen, ob ich sie alle behalten werde; aber die beiden, welche ich bestellt[3] habe, werde ich gewiß behalten. Sind Sie der Lehrer dieses Knaben? Ja, ich bin es. Es ist ein Unglück keinen Freund zu haben. Ich bin um seinetwillen gestraft worden. Erbarmen Sie sich[4] meiner. Das Mädchen fiel ihm zu Füßen und bat ihn um Verzeihung[5]. Herr Müller ist ein Verwandter (ազգական) von mir. Einer von Euch muß sterben, sagte der Räuber[6] zu uns. Ich kann ihnen nicht alles erzählen, was ich erlebt[7] habe.

1 վկայութիւն. 2 խենդութիւն. 3 ապսպրել. 4 գթացէք. 5 թողութիւն. 6 աւազակ. 7 գլխէն (բան մը) անցնիլ։

## Տարադրութիւն. 140.

Ես՝ որ քու բարեկամդ եմ, քեզի այս խորհուրդը չեմ տար։ Անիկա զիրենք չի յիշեր։ Ես քու պատճառաւդ պատժուեցայ։ Մարդիկ պէտք էին իրարու օգնել[1]։ Մենք զինուորքս մեր մեծերուն[2] կը հնազանդինք։ Եռեւէս (ինծմէ երէցը) օտարական մը ներս մտաւ։ Կեցցէ՛ թագուհին, գոչեց ժողովուրդը[3]։ Ասոնք Տիկին Լ.ին եղբօր աղջիկնե՞րն են։ Այո, իրենք են։ Այս պարտէզն իրեն է. բայց անիկա իմս է։ Իրմէ լուր կը սպասեմ։ Բոլոր ներկայ եղողներն[4] իրեն օգնութեան եկան։ Ո՞վ կայ հոն։ Տղաք են։ Զմեզ իւր քովը կանչեց (ließ ... kommen)։ Կարգն իմս չէ, ձերն է։ Մեր պատուոյն համար մեծ հանդիսութիւն[5] մ'եղաւ (man gab)։ Անիկա կը հաստատէ[6], թէ անմեղ[7] է, բայց այնպէս (es) չէ։

1 helfen. 2 Vorgesetzten. 3 das Volk. 4 Umstehenden. 5 Fest, Հ.։ 6 behaupten. 7 unschuldig.

## Բ. ՀԱՐՑԱԿԱՆ ԵՒ ՅԱՐԱԲԵՐԱԿԱՆ ԴԵՐԱՆՈՒԱՆՔ

1. Ո՞րը welcher, e, es? ո՞րը հարցական դերանունն իր գոյականէն sein բայով բաժնուած է՝ միշտ չեզոք կը դրուի, ինչ սեռի ու թուով ալ ըլլայ գոյականն : Օր.

Welches ist ihr Hut? ո՞րն է ձեր գլխարկը.
Welches ist Ihre Tochter? ո՞րն է ձեր դուստրը.
Welches sind die größten Tugenden?
Որո՞նք են ամենամեծ առաքինութիւնք :

2. Welcher կամ der յարաբերական դերանունը միջանկեալ նախադասութեան մէջ պէտք է առաջին տեղին ունենալ : Ստացուած մը նշանակող dessen եւ deren սեռականները ստացեալ իրին անմիջապէս քովը կը դրուին : Եթէ այս ստացեալ իրը նախադրութիւն մ'ունի, այնը յարաբերականէն յառաջ կը դրուի (Համմ. Ա. Մասն, եր. 141. Դիտ. 2, 3.) : Օր.

Der Baum, auf welchen er kletterte.
Ծառն՝ որուն վրայ ինք մագլելով ելաւ.
Das Haus, auf dessen Balkon wir standen.
Տունը՝ որուն պատշգամին վրայ կը կենայինք.
Er hat einige Juwelen, deren Wert er nicht kennt.
Քանի մը գոհարեղէններ ունի, որոնց յարգը չի ճանչնար.
Ein Freund, auf dessen Freundschaft wir zählten.
Բարեկամ մը, որուն բարեկամութեանը վրայ կը վստահէինք :

ՄԴ. So յարաբերականին welcherի տեղ գործածութիւնը հնացեալ է, եւ բանաստեղծութեան մէջ միայն կը գործածուի : Օր.

Von allen, so da kamen այն ամէնէն՝ որք կու գային :

3. Եթէ որ յարաբերականը նախընթաց նախադասութեան ամբողջ իմաստը կը յարաբերէ, պէտք է wasով թարգմանել. ասոր տեղ welches գործածելէն զգուշանալու է : Օր.

Er verkaufte seine Bücher, was sehr unrecht war.
Իւր գրքերը ծախեց, որով շատ գէշ ըրաւ.
Wenn er diese Worte gesprochen hat, was ich bezweifle . . .
Եթէ այս խօսքերս ըսած է, որուն վրայ կը տարակուսիմ . . . :

4. Գերմաներէնի մէջ յարաբերականին գործածութիւնը շատ յաճախեալ է, բայց Հայերէնի մէջ պէտք չէ ամէն անգամ յարաբերականով թարգմանել, այլ դերբայով մը գլխաւորել եւ յարաբերական նախադասութիւնները մէկ նախադասութեան ամփոփելու է : (Տես նաեւ Խթ. Դաս, § 1.) Օր.

Mißtraue jedem, der von deinem Freunde Böses spricht!
Քու բարեկամիդ վրայ գէշ խօսողին մի՛ վստահիր.
Der Wald, den ich sah տեսած անտառս.
Die Städte, die ich sehen werde տեսնելու քաղաքներս.
Thun Sie, was Sie wollen ուզածնիդ (ինչ որ կ'ուզէք) ըրէք.

Was mich bewogen hat, dies zu thun, ist . . .
Զայս ընելու զիս դրդողն . . . է.
Sie schrieben alles nieder, was jeden Tag geschah.
Ամէն օր պատահածները գրի կ'առնուին.
Wir erzählen, was wir gesehen haben.
Մենք տեսածնիս կը պատմենք։

---

## Գ. ԱՆՈՐՈՇ ԴԵՐԱՆՈՒԱՆՔ

(Տես Ա. Մասն, եր. 146—148.)

1. All դերանունը՝ եթէ իրմէ ետքն ար. կամ չեզ. ցուցական կամ ստացական ածական մը գայ, եզակիի մէջ անփոփոխ կը մնայ։ Օր.

All dieser Wein ist schlecht բոլոր այս գինին գէշ է.
All mein Geld ist verloren բոլոր ստակս կորսուեցաւ.
Ich bin all meines Gepäckes beraubt worden.
Բոլոր աղխս կողոպտեցին։

2. Նմանապէս ganz բոլոր, ամբողջ երկրի կամ քաղքի անուանէ յառաջ դրուած ատեն անփոփոխ կը մնայ։ Օր.

Ganz Frankreich ամբողջ Գաղղիա. Ganz Paris ամբողջ Բարիզ [քաղաքը.
In ganz Europa բոլոր (ամբողջ) Եւրոպայի մէջ։

3. Alles սովորաբար ամէն բան՝ կը նշանակէ. բայց երբեմն անձանց համար ալ կը գործածուի ամէնքն (ալ), ամէն մարդ նշանակութեամբ։ Օր.

Alles ist fort ամէնքն ալ գացած են.
Alles rennet, rettet, flüchtet (ամէն մարդ կը փախչի.). (Շիլլէր.)

4. Etwas՝ ածականէ կամ մակբայէ յառաջ քիչ մը = ein wenig նշանակութիւնը կ'ունենայ։ Օր.

Er ist etwas nachlässig անիկա քիչ մ'անհոգ է։

5. Viel եւ wenig եզակի գոյականի մ'առջեւ անփոփոխ կը մնան, բայց յոգնակի գոյականի առջեւ կը համաձայնին։ Օր.

Er hat viel Geld անիկա շատ ստակ ունի.
Er hat wenig Zeit անիկա քիչ ժամանակ ունի.
Ich habe nur wenige Freunde քիչ բարեկամ ունիմ։

## Հրահանգ. 141.

1. Welches sind Ihre Handschuhe, diese oder jene? Welches sind die größten Männer Frankreichs? Geben Sie ihm die Belohnung[1], deren er würdig[2] ist. Der Garten, von dem Sie sprechen, ist nicht mein. Der Kranke, an dessen Genesung[3] man zweifelte, ist

[1] վարձք. [2] արժանի. [3] ապաքինութիւն, առողջութիւն.

wieder geheilt[4] worden. Ich hoffe, daß du mein Geheimnis[5] durchaus niemanden sagen wirst. Was ihr auch immer redet, an was ihr auch immer denken möget, beziehet (վերածել) alles auf den Ruhm Gottes. Mancher spricht von Dingen, die er nicht versteht.

2. Hier sind dreißig Fünffrankenstücke[6] und zwei Louisdor, was gerade die Summe ausmacht, die ich ihnen schuldig bin. Sagen Sie ihm, was Sie für gut finden. Was gelingt[7], wird selten getadelt. Alles freut sich. Sie haben nicht alles gesehen. So ist seine Lage (դիրք). Mit all seinem Geschwätz[8] ist er verächtlich[9]. Man muß die Sache nehmen, so wie sie ist. Es geht nichts über Reichtum, um viele Freunde zu haben. Er beurteilte die Herzen seiner Freunde nach seinem eigenen. Das Beste das Sie thun können, ist abzureisen.

4 առողջացած. 5 գաղտնիք. 6 հինգ ֆրանքնոց 7 յաջողիլ. 8 շատախօսութիւն. 9 անարգ, արհամարհելի։

## Շարադրութիւն. 142.

1. Ո՞րն է ձեր դիտաւորութիւնը[1]։ Ո՞րն է ամենամեծ պատիւը[2]։ Կը ճանչնամ [այն] կինը, որուն դուստրը հիւանդ է։ Կինը, որուն որդին կը յիշէք (erinnern an ...), ինծի նամակ մը գրած է։ [Ան] տունը, որուն տէրը[3] դուք կը ճանչնաք, քսան հազար ֆրանք կ'արժէ[4]։ [Այն] իշխանը, որուն բարութեանը ես այս պաշտօնս[5] պարտական եմ[6], իւր բարեկամն է։ Թշուառ, ով որ ալ ըլլաս, զքեզ պիտի չմատնեմ[7]։ Ով որ ալ ըլլայ կ'ուզեմ հետը (mit ihm) խօսիլ։ Ձեզի ինչ որ ալ պատահի, մի յուսահատիք[8]։ Ես եւ ոչ մէկ բանի մը վրայ գանգատեցայ[9]։ Քու տեսած պարտէզներդ գեղեցիկ չեն։

2. Իրեն ծանր յանդիմանութիւններ[10] տուին (machen), որ չէր պատշաճեր[11]։ Ամէն բան իւր ժամանակն ունի։ Զիս վշտացընող (betrüben) բանն ան է, որ ինծի այցելութեան չեկաւ (besuchen)։ Բոլոր մարդիկ եղբայր են։ Օրիորդ Մարիամն քիչ մը շատ ամբարտաւան[12] է։ Ամբողջ Հռովմ, ամբողջ Իտալիան իսկ զարհուրեցաւ[13]։ Իրմէ կը զզուիմ[14] իւր ամէն հարստութեամբքն հանդերձ։ Բոլոր զինքը տեսնողները կու լային։ Մարդ (man) պէտք չէ ամէն մտածածը զրուցել։ Ո՜ղորմածնէ՜ք ըրէք։ Այս նամակը գրող օտարականը կը ճանչնա՞ք։

1 Absicht, էգ. 2 Ehre, էգ. 3 Eigentümer. 4 ist ... wert. 5 das Amt, die Anstellung. 6 ich verdanke. 7 verraten. 8 den Mut verlieren. 9 sich beklagen. 10 schwere Vorwürfe. 11 passend sein. 12 zu stolz. 13 in Schrecken setzen. 14 verabscheuen հյց. ով։

